ԿԱԶՄԱԿԱՆ ԿԱՆՈՆԱԳԻՐ

# ԱԶԳԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆՑ

Սահմանեալ

## Ի ԽԱՌՆ ԺՈՂՈՎՈՅ

ԱԶԳԱՅԻՆ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ



Կ. ՊՕԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Ն. ՓԱՓԱԶԵԱՆ

1887

# ԿԱԶՄԱԿԱՆ ԿԱՆՈՆԱԳԻՐ

# ԱԶԳԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆՑ

ՏԱՃՄԱՆԵԱՆ

## Ի ԽԱՌՆ ԺՈՂՈՎՈՅ

*ԱԶԳԱՅԻՆ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ*





*Կ. ՊՈԼԻՍ*

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Ն. ՓԱՓԱԶԵԱՆ

1887

# ԿԱԶՄԱԿԱՆ ԿԱՆՈՆԱԳԻՐ

# ԱԶԳԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆՑ

## ՍԱՀՄԱՆԵԱԼ

## Ի ԽԱՌՆ ԺՈՂՈՎՈՅ

### ԱԶԳԱՅԻՆ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ



Յօդուած 1. — *Ազգային Ընկերութիւնք գոյութիւն կստանան Ազգային Սահմանադրութեամբ գծեալ եւ ի վաղուց անտի Կայսերական հրովարտակներով Ազգին տուեալ առանձնաշնորհմանց սահմանին մէջ ։*

*Սոյն Ընկերութեանց նպատակը պարտի լինել ի Կ.Պօլիս եւ 'ի գաւառս՝ ըստ օրինի Ազգային Վարչութեանց պատկանեալ եւ նոցա իրաւասութեան ներքեւ գտնուող բարեպաշտական եւ կրթական գործոց օժանդակել . այն է՝ կրթել Ազգին մանկտին 'ի կրօնս ու 'ի բարի վարս , տալ նոցա այն գիտելիք , որոց կը կարօտին ըստ տեղւոյն հանգամանաց իրենց բարոյական եւ նիւթական զարգացման համար ։ Նոյնպէս եւ խնամել որբերն, հիւանդներն ու կարօտեալներն ։ Այս նպատակներէն դուրս որ եւ է օժանդակ Ընկերութիւն չվաւերանար յԱզգային Վարչութենէ ։*

Յօդ. 2. — *Ընկերութեան մը հիմնադիրք պարտին բաղկանալ առ նուազն տասն անդամներէ , որք պէտք է լինին վստահելի եւ ազգային եւ քաղաքային ամեն դատա-*

պարտութենէ զերծ ։ Եթէ հիմնադիրք 'ի Կ. Պօլիս են, պարտին գրաւոր կերպիւ դիմել առ Ս. Պատրիարք Հայոց, եւ եթէ գաւառաց մէջ են, առ վիճակաւոր Առաջնորդն, նոցա քննութեան եւ վաւերացման ենթարկելով իրենց հիմնադիրը։ Սոյն հիմնագիր պարտի պարունակել՝ բացորոշ կերպիւ՝ Ընկերութեան առաջադրեալ նպատակը, գործառնութեան եղանակը, միջոցները, բաժնեգինն եւ այլ հասութից աղբիւրներն, որք սկզբամբ համաձայն պէտք է գտնուին պետական եւ ազգային օրինաց ։

Յօդ. 3. — Ս. Պատրիարք Հայոց, Կեդր. Վարչութեան Խառն Ժողովոյ պաշտօնական վաւերացումէն զկնի, կը հաստատէ Ընկերութիւնն օրհնութեան յատուկ կոնդակաւ ։ Առանց այս պաշտօնական հաստատութեան որ եւ է Ընկերութիւն անվաւեր է ։ Այս գործողութիւն կը կատարուի գաւառաց մէջ վիճակաւոր Առաջնորդաց միջոցաւ, օրինաց պահանջած սահմանին մէջ եւ կը հաղորդուի անյապաղ կեդրոնին ։

Յօդ. 4. — Գաւառաց մէջ կազմուած Ընկերութիւնք եթէ Կ. Պօլսոյ մէջ եւս ճիւղ մ'ունենալ ուզեն, պարտաւոր են այս մասին կանխապէս կեդրոնին հաւանութիւնն եւ արտօնութիւնն ստանալ 'ի ձեռն Առաջնորդաց ։

Յօդ. 5. — Ընկերութիւնք երկու ժողով միայն պարտին ունենալ, այն է, Հիմնադիր Ժողով մ'եւս Տնօրէն Խորհուրդ մը ։

Հիմնադիր Ժողովը կը բաղկանայ Ընկերութեան բաժանորդ անդամներէն, որք կընտրեն Տնօրէն Խորհուրդն, Ընկերութեան գործերը վարելու համար ։

Ազգային եւ ոչ մի Ընկերութեան ներելի չէ սոյն հիմնական կանոններէն տարբեր կազմակերպութիւն տալ իւր ներքին մատակարարութեան, եւ տարբեր անուններով անուանել իւր ժողովներն ։

Յօդ. 6. — *Ընկերութիւնք պարտաւոր են ունենալ անհրաժեշտաբար, մի ատենագրութեան տումար, յորում կարձանագրուին ժողովոց որոշմունքն, եւ մի սնտուկի տումար, յորում կը նշանակուին բոլոր ելմտական գործողութիւնք առանց բացառութեան։ Այս երկու տումարք դրոշմեալ եւ թուադրեալ պարտին լինել, 'ի Կ. Պոլիս Ազգային Պատրիարքարանի կողմէ եւ 'ի գաւառս Առաջնորդարանաց կողմէ եւ բաց պիտի լինին միշտ։*

Յօդ. 7. — *Ամեն Ընկերութիւն պարտաւոր է տարին մի անգամ իւր գործոց համարատուութիւնը յատուկ տեղեկագրով մը ներկայելու առ Ազգ. Վարչութիւնն։ Սոյն տեղեկագրին պէտք է կցուի, նաեւ Ընկերութեան ելեւմտից հաշուեցոյցն, որ յետ քննութեան եւ վաւերացման՝ հրատարակութեան կը տրուի տեղւոյն լրագրաց գոնէ միոյն մէջ։*

Յօդ. 8. — *Ազգային Ընկերութեանց հիմնադիր ժողովք իրենց կանոնագրին արտօնած եղանակաւ եւ նշանակած պարագայից մէջ միայն կրնան ընդհանուր նիստ գումարել։*

Յօդ. 9 — *Ընկերութեանց ժողովներուն մէջ՝ իրենց նպատակին ուղղակի վերաբերութիւն չ'ունեցող խնդրոց վրայ վիճաբանութիւնք բացարձակապէս արգիլեալ են։*

Յօդ. 10. — *Եթէ Ընկերութեան մը դրամագլուխն հարիւր ոսկւոյ հասնի, Ընկերութիւնը պարտաւոր է դրամապահ մ'ընտրել ազգային ծանօթ դրամատէրներէ, եւ զայս հարկ է նախապէս հաղորդել տեղւոյն Ազգային Վարչութեան 'ի վաւերացումն։ Սոյն դրամապահն Ընկերութեան կանոնաց համաձայն գործակցելու պարտաւոր լինելով հանդերձ՝ մասնաւոր հոգատարութիւն պարտի ունենալ 'ի մասին պահպանման Ընկերութեան դրամոց եւ արժէթղթոց։*

**Յօդ. 11.** — *Իւրաքանչիւր Ընկերութիւն իւր տարեկան հասութից մինչեւ օ|օ ին 10ը կրնայ յատկացնել պահեստի դրամոց, որ պիտի արդիւնաւորի Ընկերութեան բարեգործական նպատակին յարատեւութիւնն ապահովելու համար ։*

**Յօդ. 12.** — *Եթէ Ընկերութիւն մը կալուած գնել եւ վաճառել ուզէ, կը պարտաւորի նախապէս առնել Ազգային Վարչութեան հաւանութիւնն ։*

*Ընկերութեանց կալուածք պէտք է դառնան այն հաստատութեանց միոյն վրայ, որ ի վաղուց հետէ յանուն իւր կալուած գնելու արտօնեալ է ։*

**Յօդ. 13.** — *Ազգային Վարչութիւնն 'ի պահանջել հարկին՝ տեսուչներ կը կարգէ Ընկերութեանց գործերուն վրայ տեղեկութիւն առնելու ։*

**Յօդ. 14.** — *Անվաւեր Ընկերութիւնք եւ կամ օրինակ համաձայն չվարուող ընկերութիւնք անմիջապէս կը լուծուին օրինական միջոցներով ։*

*Նոյնպէս Ընկերութիւն մը, որոյ անդամոց թիւը տասնէն պակաս մնայ, լուծեալ կը համարուի ։*

*Խափանեալ կամ լուծեալ Ընկերութեանց գոյքն եւ ստացուածքն կը գրաւուին յԱզգային Վարչութենէ, զոր Ընկերութեան նպատակին համեմատ ուրիշ բարեգործական կամ կրթական պիտոյից կը յատկացնէ ։*

**Յօդ. 15** — *Ոչ մի Ընկերութիւն իրաւունք կրնայ ունենալ 'ի Պոլիս եւ 'ի գաւառս դպրոց մը կամ որ եւ է բարեգործական հաստատութիւն մը հիմնելու եւ կամ արդէն գոյութիւն ունեցող Ազգային հաստատութեանց նպաստելու նպատակաւ՝ նոցա մատակարարութեան միջամտելու, առանց կանխապէս Ազգային Վարչութեան հաւանութիւնն ստանալու ։*

Յօդ. 16. — *Ազգային Ընկերութեանց ձեռօք բացուած վարժարանք եւ ամէն կարգի բարեգործական հաստատութիւնք ենթակայ կը մնան ըստ ամենայնի Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ եւ Ազգային օրինական տրամադրութեանց ։*

Յօդ. 17. — *Ընկերութիւն մը, որ եւ է Թաղի մէջ հանգանակութիւն ընելու կամ պնակ շրջաբերելու համար պարտաւոր է նախապէս Թաղիս Խորհրդոյն հաւանութիւնն առնել, նոյնպէս եւ յանուն որ եւ է Ընկերութեան գանձանակի շրջագայումը պէտք է արտօնեալ լինի յԱզգային Վարչութենէ ։*

Յօդ. 18 — *Թաղերու մէջ Թաղ. Խորհրդոց իրաւասութեան ներքեւ կազմեալ մասնաւոր Ընկերութիւնք իրենց օրինական վաւերացումը կընդունին, Թաղ. Խորհրդոց խողովակաւ եւ համարատու կը լինին ուղղակի առ Թաղ. Խորհուրդն տեղւոյն, որ իւր ընդհանուր համարատուութեամբը պատասխանատու կը մնայ առաջի Կեդր. Վարչութեան ։*

Յօդ. 19. — *Ներկայ կազմական կանոնագրին հաստատութենէն առաջ որչափ Ընկերութիւնք որ կան վաւերացեալ կամ անվաւեր, պարտաւոր են մինչեւ երեք ամիս իրենց հիմնագրերն ու կանոնագրերն Ազգ. Վարչութեանց ներկայել 'ի բարեփոխումն եւ 'ի վաւերացումն, վերոնշանակեալ հիմանց եւ տրամադրութեանց համաձայն ։ Եթէ Ընկերութիւն մը այս օրինական պարտականութիւնը չկատարէ, թէեւ 'ի վաղուց վաւերացեալ իսկ լինի, դարձեալ անվաւեր պիտի հրատարակուի, եւ Ազգ. Վարչութիւնք իրաւունք պիտի ունենան նոցա նկատմամբ օրինաց տրամադրութիւններն 'ի գործ դնելու ։*

Յօդ. 20. — *Հայաստանեայց Եկեղեցւոյ աւանդութեանց հակառակ հանդէսներն արգիլեալ են ։ Իսկ դպրոցա-*

*կան հանդէսք պէտք է նախապէս արտօնեալ լինին ձեռնհաս իշխանութենէ ։*

Յօդ. 21. — *Այն Ընկերութիւնք, որք սոյն կազմական կանոնագրին տրամադրութեանց համաձայն կը կազմուին եւ կը գործեն, իրաւունք կստանան Ազգ. Վարչութեան պաշտպանութիւնը եւ քաջալերութիւնը վայելելու ։*

**Սահմանեալ ի խառն Ժողովոյ Ազգ. Կեդր. Վարչութեան**

Ատենադպիր Քաղ. Ժողովոյ
**Յ. Կ. ՆՈՒՐԵԱՆ**

Ատենադպիր Կրօն. Ժողովոյ
**Մ. Ե. ԽՐԻՄԵԱՆ**

*ՀՐԱՄԱՅԵԱԼ Ի ԳՈՐԾԱԴՐՈՒԹԻՒՆ*
**ՊԱՏՐԻԱՐՔ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍՈՅ**
**ՅԱՐՈՒԹԻՒՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ**

16 *Յունվար* 1887
*Ի Պատրիարքարանի Հայոց*
*Կ. Պոլիս*



